ՃԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ
16 ՄԱՐՏ 1972

# ՄԱՐԶԱԿԱՆ

**ՖՈՒԹՊՈԼ**

## Երեւանի «ԱՐԱՐԱՏ»ը Ալճերիոյ Մրցաշարքի Ախոյեան

ԵՐԵՒԱՆ, (Հ.Հ.Գ.). — «Ինչպէ՞ս են գործերը» աւանդական հարցումին, «Արարատ»ի աւագ մարզիչ Նիգոլայ Գլեփովը պատասխանեց.—

— Անչափ յոգնած ենք։ Կարծես եղանակը նպատակադրած էր մեզ փորձութեան ենթարկել։ Մոսկուայէն Ալճերիա ուղղուելով, մեծ ուշացումով տեղ հասանք եւ քանի մը ժամ յետոյ ստիպուած էինք ունենալ մրցաշարքի առաջին հանդիպումը («Մոնազրակ» խումբին հետ)։ Այդ խաղին մեր խումբը մասնակցեցաւ հետեւեալ կազմով.— Տեմիրճեան, Սարգիսեան, Ֆ. Աբրահամեան, Ա. Ցարութիւնեան, Գէորգեան, Պոնտարենքօ, Մարտիրոսեան, Փօղոսեան, Հունանով, Մարգարով, Ղազարեան։ Մրցակիցը շատ ուժեղ չէր, բայց կը խաղար սեփական դաշտի վրայ, նախապատրաստուած էր այդ հանդիպման։ Բացի այդ, խաղադաշտը կանաչ ծածկ չունէր։ Խաղի հիմնական ժամանակը, ինչպէս յայտնի է, աւարտեցաւ 3-3 արդիւնքով։ Մեր թիմէն կոլերը խփեցին Մարգարովը, Պոնտարենքօն եւ Հունանովը։ Հետաքրքիր էր 11 մեթրնոց հարուածներու իրագործումը։ Առաջինը խփեցին Ալճերիացիները (5-էն 4), ապա Հունանովը, Մարտիրոսեանը, Մարգարովը, Փօղոսեանը եւ Ղազարեանը իրար ետեւէ խփեցին հինգ կոլ։

Ալճերիոյ մէջ մենք նպատակ ունէինք լուծել մարզական որոշ խնդիրներ։ Սակայն կանաչ, փափուկ ծածկով խաղադաշտերու պակասը մեզ հնարաւորութիւն չտուաւ լրիւ իրականացնել փլանաւորուածը։

Ռումանական «Ուտա» թիմի ֆութպոլիստներու հետ հիւրեղանք Սահարայի անապատին մէջ աշխատող ալճերիացի նաւթագործներուն մօտ եւ անոնց համար ցուցադրական հանդիպում ունեցանք գրեթէ աւազի վրայ։ 1-0 հաշուով յաղթեցին «Արարատ»ցիները, որոնց ջերմօրէն ծափահարեցին հանդիսականները։ Ընդհանրապէս, մեր նկատմամբ շատ սիրալիր եւ ուշադիր վերաբերմունք կը ցուցաբերէին ալճերիացի բարեկամները։

Փետրուարի 24-ին, մրցաշարքի եզրափակիչ ընթացքին, կրկին հանդիպեցանք «Ուտա»ի հետ։ «Արարատ»ի կազմը հետեւեալն էր.— Ա. Աբրահամեան, Գէորգեան, Ֆ. Աբրահամեան, Փովլենքօ Մեսրոպեան, Պոնտարենքօ, Ա. Ցարութիւնեան, Մարտիրոսեան, Փօղոսեան, Էդ. Ցարութիւնեան, Ղազարեան։

Առաջին կիսախաղին հաշիւը չբացուեցաւ։ Երկրորդ կիսախաղին «Արարատ»ը իփեց երկու անպատասխան գնդակ եւ դարձաւ մրցաշարքի ախոյեան։

### ԿԵՆԱՏԻ ՀՈՒՆԱՆԵԱՆ ԿԸ ԽԱՂԱՅ «ԱՐԱՐԱՏ»ԷՆ

Սովետական Միութեան ֆութպոլի ֆետերասիոնը ընդունեց Լենինկրատի «Զենիթ»-էն խաղացող սփորի վարպետ Կենատի Հունանովի (Հունանեան) դիմումը, «Նոր Թոյլ տալով այս մրցաշրջանին խաղալու Երեւանի «Արարատ»ի կազմին ,էջ։

Կ. Հունանեան արդէն իսկ ծանօթ է Սովետ. ֆութպոլին մէջ։

—— ** ——

## Հ.Մ.Մ.—ՄԱՍԻՍԻ ՖՈՒԹՊՈԼԻ ԿԱԶՄԸ ՀԱՅԱՍՏԱՆ ՊԻՏԻ ԵՐԹԱՅ

Ուրախութեամբ կը տեղեկանանք, որ Պուճ Համուտի (Լիբանան) Հ.Մ.Մ.- Մասիսի ֆութպոլի խումբը, Մարտի ընթացքին Սովետական Հայաստան պիտի մեկնի, բարեկամական մրցումներ խաղալու համար հայրենիքի ֆութպոլի զանազան խումբերու հետ։

Այս առընչութեամբ Լիբանանի ֆութպոլի ֆետերասիոնը Երեքշաբթի, 15 Փետրուարի իր նիստի ընթացքին տուած է իր արտօնութիւնը, կը գրէ «Այգ»։

(Պէյրութ)

—— ** ——

**ՊԱՍՔԷԹ ՊՈԼ**

## Անթուրայի (Լիբանան) Մրցաշարքը

Անթուրայի Ակումբին կողմէ կազմակերպուած պասքէթպոլի Մրցաշարքը վերջ գտաւ Հ.Մ.Ը.Մ.ի յաղթանակով, որ աւարտական մրցումին 75-68 արդիւնքով պարտութեան մատնեց կազմակերպիչ խումբը։

Երրորդ եւ չորրորդ տեղերուն համար մղուող պայքարը, իրարու դէմ կը հանէր առաջնակարգ միւս երկու խումբերը՝ Հ.Մ.Մ. եւ Անդրանիկ, Հ.Մ.Մ.ի կրովի տղաքը, շնորհիւ իրենց կանոնաւոր մարզումներուն եւ հաւաքական խաղին, 84-80 արդիւնքով տարին արժանի յաղթանակ մը, գրաւելով սոյն մրցաշարքի 3-րդ տեղը։

Նշենք, թէ սոյն մրցաշարքին, Հ.Մ.Մ. միայն մէկ ու կէս կողովով պարտուած էր Հ.Մ.Ը.Մ.էն։



## ԱՊԱՔԻՆՈՒՄ ԿԸ ՄԱՂԹԵՆՔ

Ցաւով տեղեկացանք, որ Գահիրէի Հայկական Ընթերցասրահի վարչութեան անդամ եւ Ս. Եկեղեցւոյ Միացեալ Հոգաբարձութեան անդամներէն՝ ընկեր Պետրոս Մովսէսեան, վիրաբուժական գործողութեան մը ենթարկուած է եւ որ անցած է յաջող։

Շուտափոյթ եւ կատարեալ ապաքինում կը մաղթենք մեր սիրելի ընկերոջ.

### «ՋԱՀԱԿԻՐ»ԻՆ

Ողբ. Արտաշէս Թաշգաբուլեանի տխուր մահուան առթիւ վասն ցաւակցութեան՝ Տէր եւ Տիկին Վահան Զէնճինեան կը նուիրեն 100 ե.դ.

### ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆՆԵՐ

(ԵԳԻՊՏԱԿԱՆ ԴԱՀԵԿԱՆՈՎ)

Օրդք. Ալիս եւ Անի Ճէնկէօզեան քոյրեր, իրենց շատ սիրելի մօր մահուան առթիւ եւ անոր անթառամ եւ քաղցր յիշատակին կ՚ընեն հետեւեալ նուիրատուութիւնները.

| | |
|---|---|
| Ս. Պօղոս Պետրոս | |
| Եկեղեցւոյ պայծառութեան | 500 |
| Աղեքս. Աղքատախնամին | 500 |
| Պօղոսեանի ճաշի սեղանին | 500 |
| Տիգրան Երկաթին | 1000 |
| Տիգրան Երկաթ Ուս.ին | 500 |
| Հ.Մ.Ը.Մ.-Նուպար Աղեքս. | 500 |
| Այծեմնիկին | 500 |
| «Արեւ»ին | 500 |
| «Ջահակիր»ին | 500 |

(Ստանալ Պր. Եր. Գալփաքճեանէն)

Տիար Գառնիկ եւ Մաքրուհի Սարաֆեան Եղբարք, իրենց հօր՝ ողբ. Արտէն Սարաֆեանի մահուան 36րդ տարելիցին առթիւ, անոր քաղցր յիշատակին կը նուիրեն.

| | |
|---|---|
| Ս. Պօղոս-Պետրոս | |
| եկեղեցւոյ պայծառութեան | 100 |
| Աղեքս. Աղքատախնամին | 100 |
| Պօղոսեանի ճաշի սեղանին | 100 |

Տէր եւ Տիկին Ցարութիւն Թիւյսիւզեան, իրենց սիրեցեալ ծնողաց եւ եղբօր՝ ողբ. Անդրանիկ Եէմէնիճեանի քաղցր յիշատակին կը նուիրեն.

| | |
|---|---|
| Ս. Պօղոս-Պետրոս | |
| եկեղեցւոյ պայծառութեան | 100 |
| Աղեքս. Աղքատախնամին | 100 |
| Պօղոսեանի ճաշի սեղանին | 100 |

### ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀԻՆ

Ընկեր Պետրոս Մովսէսեանի վիրաբուժական յաջող գործողութեան ենթարկուելուն ուրախ առիթով, Տէր եւ Տիկին Մրսաք Մամուրեան կը նուիրեն 100 ե.դ.։

Առ ի գնահատութիւն սրահիս կատարած հայրենասիրական եւ հայապահպանման գործին, Նիւ Եորքէն կը նուիրեն.

| | |
|---|---|
| Տէր եւ Տիկ. Սիմոն Սամսոնեան | 500 |
| » » Նուպար Քիւփէլեան | 350 |

### ԱՂԵՔՍ. ԱՂՔԱՏԱԽՆԱՄԻՆ

Տէր եւ Տիկին Ցարութիւն Ցարութիւնեան՝ 200 ե.դ., ողբ. Տիկին Նազենի Օրջանեանի մահուան տխուր առթիւ։

Տիար Գաբրիէլ Թօրիկեան՝ 100 ե.դ., ողբ. Տիկին Նազենի Օրջանեանի մահուան տխուր առթիւ, վասն ցաւակցութեան։

### ՊՕՂՈՍԵԱՆԻ ՃԱՇԻ ՍԵՂԱՆԻՆ

Տիկին Հայկանոյշ Գրաուն Թարաքճեան՝ 300 ե.դ. իր նուէրը։

Տէր եւ Տիկին Արթիւր Ոսկանեան՝ 100 ե.դ., ողբ. Տիկին Մարի Մօրլեանի (Պէյրութ) կսկծալի մահուան տխուր առթիւ։

### ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

ՊՊ. ՅՈՎԱԿԻՄ ՍԻՐՔԷՃԵԱՆ ԵՒ ՎԱՀՐԱՄ ԲՐՈՒՏԵԱՆ. — Ստացած ենք Առաջնորդական Տեղապահ եւ Պաշտ. Քաղաքական Ժողովի Ատենապետ Գերշ. Տ. Զաւէն Ս Եպս. Չինչինեանին ուղղած ձեր 28 Փետրուար 1972 թուակիր նամակին պատճէնը։

